# ՍԱՐՍԱՓԵԼԻ ՓՈԹՈՐԻԿ ՍԵՒ ԾՈՎՈՒ ՄԷՋ

## Հարիւրաւոր գաղթականներ խեղդուա՞ծ

Պուքրէշէն կը հեռագրեն նոյեմբեր 1 թուականով .— Քանի մը նաւեր ընկղմեցան Սեւ ծովու մէջ քանի մը հարիւր ճամբորդներով, երբ հետեւանք երկար ատենէ ի վեր չտեսնուած փոթորիկի մը։ Ուրիշ բազմաթիւ փոքր նաւեր կորսուած են եւ կը վախցուի թէ մարդկային կորուստը շատ աւելի բարձր է։ «Կէյպզէ» շոգենաւը, որ կ'երթեւեկէր Պոլսոյ եւ Փոքր Ասիոյ նաւահանգիստներուն միջեւ, ընկղմած է Վոսփորի բերանը, իր 105 ճամբորդներով, համաձայն հոս հասած տեղեկութեանց։ Լուր չկայ պուլկարական «Ցար Ֆէրտինանտ» շոգենաւէն, որ Քոնսթանցայէն մեկնեցաւ չորս օր առաջ, 200 Թուրք գաղթականներով եւ հարիւրաւոր արջառներով։ Վերջին լուր մը կ'ըսէր թէ կաթսան պայթած է եւ թէ շատ մը ճամբորդներ եւ կենդանիներ քշուած են ալիքներէն։

Ռումանական «Ռէկէլէ Քարոլ» շոգենաւին ճամբորդները չկրցան որ եւ է օգնութիւն հասցնել, երբ «Ատանա» շոգենաւը, որ Թուրք գաղթականներ կը փոխադրէր Հայաստան (անշուշտ ըսել կ'ուզէ արեւելեան նահանգները .— Յառաջ), ընկղմեցաւ Վոսփորի առջեւ, բայց կը կարծուի թէ ճամբորդներուն եւ նաւաստիներուն մէկ մասը ազատուած է։

Երթեւեկը դադրած է եւ ճամբայ ելած շոգենաւերը 30 — 40 ժամ կ'ուշանան։

*** Նոյն քաղաքէն ուրիշ հեռագիր մը հետեւեալ մանրամասնութիւնները կը հաղորդէ, նոյն թուականով .— Երկու օրէ ի վեր Սեւ ծովը կատաղի փոթորիկի մը բռնուած է։ Ռատիոները անդադար կը բանին, օգնութիւն խնդրելով ժամէ ժամ։ «Քարոլ» շոգենաւին ճամբորդները սարսափով կը նկարագրեն «Ատանա» շոգենաւին ընկղմիլը։ Նաւը ծովուն բացերը քշուած է, յետոյ երեք անգամ ուժգնօրէն նետուելով քարափին վրայ, վերջապէս ջախջախուած է։ Հակառակ նաւաստիներու ջանքերուն, նաւը ընկղմած է քանի մը վայրկեանի մէջ։ (Այստեղ ալ հեռագիրը կ'ըսէ թէ «Ատանա» վարձուած էր «Հայաստանէն եկած Թուրք գաղթականներ փոխադրելու համար»...)։

Աւելի սարսափելի եղաւ «Կէյպզէ»ի ընկղմումը։ Գիշերանց, մինչ դէպի Պոլիս կ'ուղղուէր, փոթորիկի բռնուեցաւ Վոսփորի բերանը եւ քանի մը վայրկեանէն ծովամոյն կորաւ ամբողջ բեռներով եւ ճամբորդներով։ Շոգենաւային գործակալութիւնները 105 հոգի կը հաշուեն ճամբորդներն ու նաւաստիները։ Միւս կողմէ, լուր չկայ «Ցար Ֆէրտինանտ» շոգենաւէն, որ Քոնսթանցայէն մեկնած էր 200 Թուրք գաղթական ընտանիքներով եւ բազմաթիւ արջառներով, հաւերով եւ գոյքերով։

Փոթորիկը ուժգնօրէն կը շարունակուի Սեւ ծովու եւ Եգէականի մէջ։ Նաւաստիները կ'ըսեն թէ Սեւ ծովը երբեք այսքան կատղած չէր տասը տարիէ ի վեր։ Ռումանական կառավարութիւնը արգիլեց որ եւ է շոգենաւի մեկնումը։ Վերջին պահուն Քոնսթանցա հասած նաւերու նաւաստիները բոլորովին ուժաթափ եղած էին, 30—40 ժամ մաքառած ըլլալով ալիքներուն դէմ։

## Զինուորական գործողութիւնները

Վերջին լուրերը կը հաստատեն թէ իտալական բանակը լուրջ յարձակողականի մը կը պատրաստուի։ Անդադար ուտեստ եւ ռազմանիւթ կը փոխադրուի Մասուայէն եւ ուրիշ կեդրոններէ։ Իտալական բոլոր նաւահանգիստները իրարու կապուած են զինուորական ճամբաներու ցանցով մը։ Օդանաւերը միշտ կը ռմբակոծեն Օկատէնի հաբէշական դիրքերը։

*** Իտալական բանակէն դասալիք զինուոր մը Ատտիս - Ապէպա հասնելով, ազատ արձակուեցաւ եւ գործի գրուեցաւ։ Ծնունդով Աւստրիացի է, 23 տարեկան։ Կը պատմէ թէ ընդհանուր յարձակողական մը սարքուած էր սեպտեմբեր 15ին կամ 20ին, բայց յանկարծ հրամանը ետ առնուեցաւ Հռոմէն հասած հեռագրով մը։ Շատ լաւ կը գտնէ իտալացի զինուորներուն բարոյական կորովը, բայց կ'ըսէ թէ չափազանց կը նեղուին աճաւոր տաքէն, որ փուռերու կը վերածէ հրասայլերը եւ կը շոգիացնէ պէնզինը։

## Նորէն հականգլիական ցոյց Հռոմի մէջ

Ուրբաթ օր նորէն հականգլիական ցոյցեր կատարուեցան Հռոմի մէջ։ Համալսարանական ուսանողներ անգլիական դեսպանատան մը երթալով, պահանջեցին ջնջել բրիտանական զինանշանը եւ անգլերէն բառերը։ Հարկ եղաւ ծածկել զինանշանը, և ի վերջոյ ոստիկանութիւնը օգնութեան հասնելով ցրուեց ուսանողները։ Ուրիշ բազմաթիւ ցուցարարներ ազդեր փակցուցին օտար խանութներու վրայ, յանձնարարելով իտալական ապրանքներ գնել։ Տեղ տեղ ջախջախուեցան ցուցափեղկերը։

## Գերմանիոյ դիրքը պատժմներու մասին

Ժընեւէն կը հեռագրեն թէ գերմանական կառավարութիւնը տրամադիր չերեւար պատասխանելու Ազգերու Դաշնակցութեան ընկոյզներուն՝ պատժական տնօրինութեանց մասին։ Իսկ եթէ պատասխանէ, իր բացարձակ չէզոքութիւնը պիտի յայտնէ թէ Իտալիոյ եւ թէ Եթովպիոյ հանդէպ։ Պիտի ծանուցանէ թէ արգիլած է զէնքի եւ ռազմանիւթի արտածումը երկու պետութեանց համար ալ։ Ինչ կը վերաբերի տնտեսական տնօրինութեանց, կառավարութիւնը պիտի յարգէ Իտալիոյ հետ կնքուած առեւտրական դաշնագիրները, սակայն չպիտի աւելցնէ իր արտածումները։ Այս առթիւ դիտել կը տրուի թէ Իտալիոյ հետ եղած փոխանակութիւնները մեծապէս աւելցած են արդէն կարգ մը ապրանքներու համար։ Պաշտօնական վիճակագրութեանց համաձայն, ածուխի վաճառումները 2,900,000 թոնէն բարձրացած են 4,400,000ի, բաղդատելով 1934ի եւ 1935ի առաջին ութ ամիսներու գործառնութիւնները։ Ուրիշ ապրանքներու արտածումն ալ աւելցած է, թէեւ թուանշաններ չեն տրուիր։

## Ողջ ողջ վառեր են դաւաճանին ընտանիքը

Անգլիական աղբիւրէ կը հաղորդեն թէ Ռաս Կուքսա, որ Իտալացիներուն անձնատուր ըլլալով Թիկրէի նահանգապետ նշանակուեցաւ, պատժական արշաւախումբ մը ղրկած է Մաքալլէ, վրէժ լուծելու համար։ Հաբէշները 50,000 թալէր պարգեւ խոստացած են իր գլուխը բերողին, իսկ Ռաս Քասսա հրամայած է ոչնչացնել անոր բոլոր ստացուածքները։ Միւս կողմէ, խմբովին ջարդուած է Ռաս Կուքսայի ամբողջ ընտանիքը, կիներով եւ մանուկներով։ Համաձայն հաբէշական սովորութեան, դահերը փաթթած են մեղրով և մեղրամոմով ծածկուած կտաւներու մէջ եւ կրակի տուած են։

*** Հաբէշները իրենց յոյսը դրած են երեք բնական զինակիցներու վրայ, — ծարաւ, հիւանդութիւն եւ անապատ։ Անապատներու հազուագիւտ ջրհորները աղած կամ թունաւորած են, այնպէս որ Իտալացիները ստիպուած են ջուր փոխադրել նոյնիսկ օդանաւերով։

---

Խորին վշտով կ'իմանանք մահը երիտասարդ ընկերոջ մը, ՅԱՐՈՒԹԻՒՆ ՊԻՊԷՐԵԱՆի, Լա Սէյնի մէջ։ Թաղումը պիտի կատարուի այսօր, կիրակի, կէսօրին, 41 Rue Clément Daniel:

Ողբացեալ ընկերը եռանդուն գործունէութիւն ունեցած է Պոլսոյ մէջ, 1915ի անուագրատիի շրջանին։ Յետոյ անցաւ Հայաստան, նոյնպէս գործօն աշխատանքներ կատարելով։ Վերջին արտագաղթէն ի վեր կը գտնուէր Ֆրանսա։

Մեր խորին վշտակցութիւնը Այրի Տիկին Պիպէրեանի։

---




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

ԿԱՐՄԻՐ ԳԻԾԷՆ ՆԵՐՍ

# ՈՂԻՄՊՈՍԻ ՏԵՂԱՇԱՐԺԸ

Ա.

## Ընկնողներն եւ բարձրացողները

Հայաստանի կուսակցական եւ պետական ղեկավարութեան մէջ վերջերս պատահած «տեղաշարժ»ը լուրջ նկատողութեան չառնուեց արտասահմանի մեր մամուլում: Նրա իսկական իմաստն իսկ մնաց չպարզաբանուած: Մինչդեռ կատարուածը աւելի քան կարեւոր երեւոյթ է: Հէնց «տեղաշարժի» հերոսներն արդէն բաւական յայտնի դէմքեր են. մէկի տապալումն ու միւսի առաջ քաշուելը չի կարող չանդրադառնալ մեր երկրի կեանքի ընթացքի վրայ:

Ահա մի քանի անուններ.—

«Հակակուսակցական վարքի, հակակուսակցական ազգայնական բամբասանքներ տարածելու եւ հարբեցողութեան համար ընկ. Կ. Այվազեանին հանել Կենտկոմի կազմից եւ վտարել կուսակցութիւնից»— յայտարարեց Հայաստանի կոմունիստական կուսակցութեան Կենտրոնական Կոմի-

[illegible]

մով, այլ աշխատանքի անցնելու պատճառով, պաշտօնից հեռացուած Ալի Մահմեդովի տեղ Հայժողկոմխորհի նախագահի տեղակալ նշանակուեց Ա. Շախուվարեանը:

Ով ծանօթ է մեր խորհրդային Ողիմպոսին, նա կը հասկնայ, թէ ի՛նչ մեծութիւններ են «տեղաշարժի» են-թարկուած. ի՛նչ կուռքեր են տապալուել եւ ի՛նչ աստուածներ գրաւել նրանց աթոռները:

Արամայիս Երզնկեանի մասին խօսելու շատ պէտք չկայ. նա ծանօթ է ոչ միայն այնտեղ, այլ եւ արտասահմանում: Շատերը յիշում են դեռ նրա այցելութիւնը Փարիզ եւ «խոհեմ» ու «պզպաւէր» դիրքը հայ հարուստների շրջանակում: Անհունօրէն պատեհապաշտ, սուր հոտառութեան տէր ու հաճոյակատար՝ նա շատ երկար մնաց իր բարձր պաշտօնում: Բոլոր այդ կառեանները, Սաքօ Համբարձում-

[illegible]

Կոօպտացիայի կարգով Երեւանի կոմիտէի կազմի մէջ մտցուեցին Ստ. Ակոպովը, Ա. Ամատունին, Ա. Շախուվարեանը, Ա. Յարութիւնեանը, Գ. Ծատուրովը եւ Հ. Մեղիքեանը:

Հաստատուեց նաեւ Երեւանի կոմիտէի բիւրօի նոր կազմը:

Հայկենտգործկոմի հոկտ. 4 որոշու-

[illegible]

թեան չարքերից: Եւ ի՛նչ ամբասատանութեամբ,— հարբեցողութի՛ւն, կարծես Երեւանի կոմունիստ վարիչներն մէջ քիչ են հարբեցողները: Եւ ի՛նչ հարբեցողներ ...

Հետաքրքրական են եւ, հեռացուածների տեղ կամ, առ հասարակ, առաջ քաշուած մարդիկ,— մեծ մա-

[illegible]

# ԿՈՄԻՏԱՍԻ ԱՐՈՒԵՍՏԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆԸ

Բ.

Նախորդ յօդուածով, երբ պատմական փլանի վրայ կը դնէինք Կոմիտասը, քանի մը տողով գծեցինք այն պատկերը, որ կը ներկայացնէր Հայոց հոգեկան կազմախօսութիւնը,— տարրաղադրութեան մօտ վիճակ մը ազգային հոգեբանութեան տեսակէտով:

Արդարեւ, եթէ հարցուէր թէ ի՛նչ ունինք յատկանշական, տոհմիկ կամ ինքնատիպ, որ ներկայացնէր մեր ազգային դիմագիծը քաղաքակրթութեան պատմութեան մէջ, դժուար էր պատասխանել:

Քիչ մը շատ պարծենցանք հայկական ճարտարապետութեամբ, առանց անդրադառնալու թէ հին նպաստ (apport) մըն է այդ: Պարծենցանք նաեւ մեր մանրանկարչութեամբ կամ ծաղկագրութեամբ, առանց անդրադառնալու նոյնպէս թէ չի մշակուիր

[illegible]

Հելլէններուն մօտ, երաժշտութիւն(*) (musique) կը նշանակէր ուսում՝ կրթելու համար հոգին, ազնուացնելու համար զգացումները, մտածումները եւ ծաղկեցնելու համար ամէնէն գեղեցիկ առաքինութիւնները, հաճելի՝ աստուածներուն: Պիւթագոր կ'ընդունէր որ երաժշտութիւնը կրթութեան բարձրագոյն գործիքն է: Պղատոն եւս երաժշտութիւնը կը համարի «կրթութեան գլխաւոր գործիքը» (Հանրապետութիւն, Գիրք Գ.): Արիստոտէլ, իր կարգին, երաժշտութիւնը կը դասէ պատանիներու կրթութեան անհրաժեշտ տարրերուն կարգը (Քաղաքական, Գլ. Ե.): Թ. Ռէյնախ կը գրէ թէ «հելլէն ազնուապետական ընկերութեանց մէջ երաժշտութիւնը անբաժան մասը կը կազմէր լաւագոյն կրթութեան»:

Առաջին անգամ Պղատոնն է, որ կը

[illegible]

հասկցած երաժշտութեան կ'ըսեն քանոր

արմոնիքի

[illegible]

ԵՐԳ ՈՒ ԹԱՏՐՈՆ

# ՖՐԱՆՑ ԼԷՀԱՐ ԵՒ ԻՐ ՎԵՐՋԻՆ ԳՈՐԾԸ

Ֆրանց Լէհար վիէննական օփէրէթի եւ վալսերու մեծ վարպետներէն է:

Ծնած է Գոմորն (Չեխօսլովաքիա) եւ կը պատկանի երաժիշտ ընտանիքի մը: Իր հայրն ու իր երեք եղբայրը եղած են նուագախումբի ղեկավարներ:

Ֆրանց վեց տարեկանին կը հեղինակէ իր առաջին մեղեդին, որուն բառերն էին.— «Կը զգամ որ խիստ հիւանդ եմ»: Հետղհետէ սակայն ան կ'եղանակաւորէ աւելի ուրախ եր-

[illegible]

տայ իր առաջին նուագահանդէսներ: Քիչ յետոյ կ'ըլլայ Պարմէն — Էլպէրֆէլտ թատրոնին նուագահանդէսներուն կազմակերպիչը, ամսական 150 մարքով: Աւելի վերջը, իր հօրը նման, կը վարէ զինուորական նուագախումբը: Այդ բոլոր ժամանակաշրջանին սակայն, ամէն բանէ աւելի ան կը զբաղի ստեղծագործութեամբ: Վիէննայի մէջ կը գրէ քայլերգ մը որ կ'ունենայ մեծ յաջողութիւն:

Կը գրէ նաեւ քանի մը երաժշտական նոր կտորներ, ինչպէս նաեւ իր առաջին գուսանախաղը՝ Րօտրիկօն: Կը ճամբորդէ դէպի Թրիէսթէ եւ Պուտափէշտ ու 1902ին կը վերադառնայ Վիէննա: Ահա այդ շրջանին է որ իրական Ֆրանց Լէհարը իր յայտնութիւնը կ'ընէ նոր գուսանրգութիւնով մը (օփէրէթ) որ կը կոչուի «Վիէննայի Կիները», ներկայացուած վիէն-

[illegible]

Լէօփոլ Սաչի եւ Մաքս տը Ռիէոյի:

Խաղը գրած են Հէյզէր, Լէօհնէր եւ Պօտանսքի:

Ահաւասիկ թատերակին նիւթը.

Բ. Թագաւորութեան ելմտական կացութիւնը խիստ վատթարացած է: Գանձային նախարարը կը թելադրէ թագաւորին որ զահաժառանգ ժորժ իշխանը ամուսնացնէ մեծահարուստ իշխանուհի Էլիզապէթ տը Լիշթանպէրկի հետ, որուն բերելիք դրամօժիտը պիտի կրնայ, գոնէ առժամապէս, հաւասարակշռել կառավարութեան ելեւմուտքը:

Կ'որոշեն ապագայ փեսացուն եւ հարսնցուն ներկայացնել իրարու, զըւիցերական Ալպեաններու ամենաշքեղ մէկ պանդոկին մէջ: Երկու երիտասարդներէն ոչ մին սակայն ուրախ է, քանզի երկուքն ալ անջատաբար կ'ե-

[illegible]

